Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 4 (82)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն ԵՐԵՎԱՆ—1940 թ.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 4 (82)



Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՕՐԸ

### ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՈՒ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Մարտի 8-ը աշխատավոր կանանց միջազգային հեղափոխական ուժերի մարտական ստուգատեսի օրն է, նրանց կոմունիստական շարժման մեջ ներգրավելու, Լենինի-Ստալինի կուսակցության շուրջն էլ ավելի սերտորեն համախմբելու և պրոլետարիատի թշնամիների դեմ մոբիլիզացիայի ենթարկելու օրը:*

*Այս տարի Մարտի 8-ը տոնվում է միջազգային բարդ պայմաններում: Սկսված երկրորդ իմպերիալիստական պատերազմըն օրեց—օր բորբոքվում է հետզհետ*

իր որբիտի մեջ է առնում կապիտալիստական նորանոր պետություններ: Որեց-որ խորացող ճգնաժամից «դուրս գալու», իրենց գաղութային տիրապետությունները պահպանելու, «արևի տակ» նոր տեղեր գավթելու և սեփական յերկրի ներսում ու գաղութներում աճող հեղափոխական շարժումները ճնշելու նպատակով, անգլո-ֆրանսիական ռեակցիոն պետությունները պատերազմ են սկսել Գերմանիայի դեմ: Պատերազմի այդ հրձիգներն աշխարհին հայտարարում են, վոր իրենք իբր թե կռվում են «հանուն դեմոկրատիայի», սակայն նրանք, իրենց այդ կեղծ ֆրազներով, չեն կարող մարդկանց աչքերը փակել: Ամբողջ աշխարհի աշխատավորները և առաջին հերթին Անգլիայի ու Ֆրանսիայի աշխատավորներն իրենց աչքի առաջ պարզ տեսնում են, վոր իրենց յերկրներում կապիտալիզմի վաղեմի շրջանի խղճուկ դեմոկրատիզմի հետքն անգամ չի մնացել: Հարձակում բանվոր դասակարգի ու նրա միակ հետևողական հեղափոխական կուսակցության՝ կոմունիստական կուսակցության վրա, կոմունիստական թերթերի փակում, կոմունիստների հալածանք, հեղափոխական դեմոկրատական ամեն մի ազատ խոսքի



դաժան ճնշում, աշխատավորների ամենատարրական իրավունքների վոտնահարում, —ահա թե ինչ է նշանակում Անգլիայի ու Ֆրանսիայի կռիվը «հանուն դեմոկրատիայի»: Յեվ այդ ամենը նպատակ է հետապնդում՝ ամրապնդել կապիտալիզմի հիմքերը, ապահովել անգլիական ու ֆրանսիական բանկիրների տիրապետությունն աշխարհի վրա, վոչնչացնել ընդդիմադիր հեղափոխական բոլոր ուժերը:

Անգլիայի ու Ֆրանսիայի ռեակցիոն կառավարող շրջաններն իրենց իմպերիալիստական նպատակներն իրականացնելու համար, բոլոր միջոցները գործադրում են պատերազմի մեջ ներքաշելու չեզոք յերկրներին: Նրանք այդ նպատակների համար պատերազմի հանեցին պանական Լեհաստանին Գերմանիայի դեմ, նրանք խրախուսեցին պանական քաղաքականությունը՝ Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ժողովուրդներին բնաջնջելու համար:

Մեր փառապանծ Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակը, խորհրդային ժողովրդի կամքով ու նրա սիրելի կառավարության հրամանով, յեղբայրական ոգնության ձեռք մեկնեց նախկին Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի

ճնշված ժողովուրդներին, նրանց ազատեց դարավոր շահագործումից, աղքատությունից ու սպառնացող բնաջնջումից և հանեց ազատ ու յերջանիկ կյանքի ճանապարհը:

Նույն Անգլիայի ու Ֆրանսիայի ռեակցիոն կառավարող շրջանները Խորհրդային Միության դեմ պատերազմի հրահրեցին տաններ-մաններհեյմյան սպիտակ Ֆինլանդային: Սակայն ֆինն աշխատավորությունը, վորի ամբողջ համակրանքը Խորհրդային Միության կողմն է, դեմ դուրս յեկավ իր համար կործանարար այդ պատերազմին, համախմբվելով ֆինլանդական կոմկուսակցության շուրջը, ստեղծեց իր սեփական ժողովրդական Հանրապետությունը: Եվ այժմ մեր անպարտելի Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակն օգնության ձեռք է մեկնել Ֆինլանդական Ժողովրդական Հանրապետությանը՝ Ֆինլանդիան մաքրելու վարձկան սպիտակ ֆիններից, ժողովրդի ամեն տեսակ թշնամիներից: Տաններ-մաններհեյմյան խեղկատակները, լեհական բեկերի ու մուսոլինիների նման, այժմ զգում են, թե ինչ է նշանակում գործ ունենալ 183 միլիոնանոց խորհրդային ժողովրդի հետ, նրա հզոր Կարմիր Բանակի հետ: Նրանք իրենց սեփական



ռաների վրա զգում են վորոշիլովյան կիլոգրամների ամբողջ ծանրությունը:

Կապիտալիստական յերկրների աշխատավոր կանայք պարզ տեսնում ու գիտակցում են, թե ինչ վնասներ է հասցնում իրենց իմպերիալիստական պատերազմը. միլիոնավոր յերիտասարդների կոտորում, ավերածություն, չտեսնված աղքատություն, սով, մայրերի ու մանուկների վողբ ու հառաչանք,— ահա ինչի յեն ականատես և ինչ են զգում իրենց կաշվի վրա նրանք: Եվ նրանք կարոտով ու հույսով իրենց հայացքներն ուղղում են դեպի մեր յերկիրը, Խորհրդային Միությունը, վորտեղ կինն ազատ է ու յերջանիկ և նույնքան յերջանիկ տղամարդու հետ համահավասար պայքարում է կոմունիզմի վերջնական հաղթանակի համար:

Այդ ամենը հետզհետե ավելի ու ավելի յեն խտացնում հեղափոխության համար մարտնչող կանանց շարքերը: Իսպանական ժողովրդի ազատագրության համար մարտնչող պանծալի բոլշևիկ Դոլորես Իբարրուրիի, անվեհեր կոմյերիտուհի Լինա Ոդենայի (վորը զոհվեց մարտերում), ճապոնացիների դեմ չին հերոսուհիների կատարած սխրագործությունները վոգևորում

են միլիոնավոր աշխատավոր կանանց, նրանց պայքարի կոչում՝ իրավունքի համար, ազատության համար, կապիտալիզմի լուծը թոթափելու համար:

Կանանց միջազգային կոմունիստական օրը խոշոր նշանակություն ունի կապիտալիստական յերկրների աշխատավոր կանանց պրոլետարիատի ու նրա կուսակցության— Լենինի—Ստալինի կուսակցության շուրջը համախմբելու և նրանց սոցիալիստական հեղափոխության համար պայքարի հանելու գործում:

## ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՄԱՐՏԻ 8-Ի ՄԱՍԻՆ

Սրանից 30 տարի առաջ, 1910 թվին Կոպենհագենում (Դանիա) տեղի ունեցավ սոցիալիստ կանանց միջազգային յերկրորդ կոնֆերանսը: Այդ կոնֆերանսում, կանանց շարժման նշանավոր ղեկավար, բոլշևիկ Կլարա Ցետկինի առաջարկությամբ վորոշում ընդունվեց՝ ամեն տարի մարտի 8—ին անցկացնել Կանանց Միջազգային Կոմունիստական օր, վորը պետք է նպատակ հետապնդեր աշխատավոր կանանց լայն մասսա-



ներին հեղափոխական մոբիլիզացիայի յենթարկելու բուրժուազիայի տիրապետության դեմ:

Կանանց միջազգային կոմունիստական օրն առաջին անգամ անցկացվեց 1911 թվին՝ Գերմանիայում, Ավստրիայում, Դանիայում, Շվեյցարիայում և 1913 թվին՝ Ֆրանսիայում:

Ցարական Ռուսաստանում առաջին անգամ կանանց միջազգային կոմունիստական օրն անցկացվեց 1913 թվին՝ Պետերբուրգում, վորին մասնակցեցին ավելի քան յերեք հազար բանվորուհիներ: 1914 թվին այդ օրն անցկացվեց Սամարայում, Սարատովում, Իվանովո-Վոզնեսենսկում և Կիևում, իսկ Պետերբուրգում լույս տեսավ «Ռաբոտնիցա» ժուռնալի առաջին համարը:

Իմպերիալիստական պատերազմի տարիներին բոլշևիկները կանանց միջազգային կոմունիստական օրն անց էին կացնում «Կորչի թալանչիական պատերազմը» լոզունգով: 1917 թ. փետրվարի 24—ին բոլշևիկների Պետրոգրադի կոմիտեյի կոչով բանվորուհիները դուրս յեկան փողոց ցույցի՝ ընդդեմ սովի, պատերազմի, ընդդեմ ցարիզմի: Պետրոգրադի բանվորները բան-

վորուհիների ցույցը պաշտպանեցին ընդհանուր գործադուլ հայտարարելով։

Երկրորդ ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունները հենց սկզբից ամեն կերպ ձգտում էին կանանց Կոմունիստական Միջազգային Օրը վերածել խաղաղ տոնակատարության, կանանց հեղափոխական շարժումը հանգեցնել միմիայն ընտրական իրավունք ձեռք բերելու համար խաղաղ պայքարի։

Միայն բոլշևիկների կուսակցությունը հետևողական կերպով պաշտպանել և պաշտպանում է կանանց շահերը, նրանց բոլոր ասպարեզներում տղամարդկանց հետ հավասար դարձնելու սկզբունքները։

## ԿՆՈՋ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ ՄԻԱԿ ՈՒՂԻՆ

Մարքսիզմ-լենինիզմը գիտականորեն ցույց է տալիս կնոջ ազատագրման միակ հեղափոխական ուղին։ Նա մեզ սովորեցնում է, վոր կնոջ լիակատար ազատությունը հնարավոր է միմիայն կապիտալիզմի խորտակումից հետո, սոցիալիստական կարգերի հաստատմամբ,— մի բան, վոր մեզ մոտ արդեն իրականացված է։



Մարքսը և Էնգելսը «Կոմունիստական մանիֆեստ»-ում գրում են՝

«Բուրժուան նայում է իր կնոջ վրա վորպես արտադրության հասարակ գործիքի։

«Բուրժուական ամուսնությունն իրապես հանդիսանում է որինական կանանց համայնացում....Ինքնին հասկանալի յե, վոր այժմյան արտադրական հարաբերությունների վերացումով կանհետանա դրանցից բղխող՝ կանանց համայնացումը, այսինքն՝ պաշտոնական և վոչ պաշտոնական պոռնկությունը» («Կոմունիստական մանիֆեստ» Հայ. հրատ., եջ՝ 68—69)։

Բուրժուական դեմոկրատիայի լոզունգները՝ «ազատության» և «հավասարության» մասին սուտ են ու կեղծիք։ Վախը մասսաներից, վոր միշտ ծանրացած է ամեն մի մեծ ու փոքր կապիտալիստի սրտին, հարկադրում է կապիտալիստների ամբողջ դասակարգին՝ իրենց սահմանադրությունների մեջ աննշան դիջումներ անել աշխատավորությանը և ամբողջ աշխարհով մեկ դոռալ՝ իրենց մոտ յեղած «ազատության» մասին, «բոլոր քաղաքացիների իրավահավասարության» մասին և այլն։ Իսկ իրականում, այդ սահմանադրությունների ամեն

մի հոդվածին հաջորդում է մյուսը «պարզաբանում», որն արգելք է հանդիսանում աշխատավորներին նույնիսկ տարրական իրավունքներից օգտվելու: Գույքային և կրթական ցենզը, սեռը, ազգային պատկանելությունը, նստակեցությունը,- ահա «հանգամանքներ», որոնք բուրժուազիան մտցնում է իր ընտրական օրենքների մեջ և ի չիք դարձնում սահմանադրությամբ խոստացած չնչին իրավունքները:

Ամենից ավելի վատթար է կնոջ իրավական դրությունը: Նա ճնշված է թե ընտանիքում և թե հասարակական—քաղաքական կյանքում:

Լենինն ասում է՝

«Մարդկային ցեղի կեսին— կանանց վրա մի, թեկուզ և ամենաառաջավոր բուրժուական հանրապետություն, գործնականում չի տվել ոչ լիակատար հավասարություն տղամարդու հետ՝ օրենքով, ոչ էլ ազատություն՝ տղամարդու խնամակալությունից ու ճնշումից»: (Երկ. հատ. 24, էջ 517):

Այդ այդպես է, որովհետև՝

«Որտեղ կան կալվածատերեր, կապիտալիստներ, վաճառականներ, այնտեղ չի կարող, նույնիսկ օրենքով, կնոջ և տղա-



մարդու միջև հավասարություն լինել»: (Լենին, Երկ. հատ. 25, էջ 40):

Ֆրանսիայում, որը պարծենում է իր «դեմոկրատիայով», ինչպես նաև Բելգիայում և Շվեյցարիայում կանայք բոլորովին զրկված են ընտրելու և ընտրվելու իրավունքից:

Ֆրանսիայում ամենառեակցիոն տեսակետներ կան կանանց մասին: Ֆրանսիական ականավոր գիտնականներից մեկը,—Փարիզի համալսարանի պրոֆեսոր Եսմենը գտնում է, որ ընտրական իրավունքից կանանց զրկելն ուղղակի բխում է «երկու սեռերի միջև աշխատանքի և ֆունկցիաների բաժանելուց»: Նրա կարծիքով տղամարդուն բաժին են ընկել հասարակական կյանքն ու նրա հետ կապված «ֆունկցիաները», իսկ կնոջը բաժին են ընկել ընտանեկան հոգսերն ու երեխաների դաստիարակությունը:

Սակայն պրոֆեսոր Եսմենի՝ «երկու սեռերի միջև աշխատանքի և ֆունկցիաների բաժանման» այդ «տեսությունն» ուրիշ նպատակ է հետապնդում: Նրա նկատառումները ցայտուն կերպով երևում են իր այն խոսքերից, թե կանանց ընտրական իրավունք վերապահելը կնշանակեր՝ «նո-

բաղդույն հասարակությունների ձգտմամբ և այլ պրոբլեմներով արդեն բարդացած քաղաքական կազմակերպության մեջ խառնվության սկզբունքներ» մուծել:

Ահա թե բուրժուական դիվանագետները ինչպես են վախենում կանանց հեղափոխական շարժումից, նրանց քաղաքական ուժից: Ահա թե բուրժուազիան ինչու չի իրավազրկում կանանց:

Մարդկության լավագույն ներկայացուցիչները դարեր շարունակ պայքարել են կնոջ ստրկացման, անհավասարության ու գերության դեմ, պահանջել են նրան հանել այդ խղճուկ վիճակից և տղամարդու հետ իրավահավասար դարձնել: Կապիտալիզմն իր բարբարոս օրենքներով ավելի ու ավելի անտանելի պայմաններ է ստեղծել նրա համար, տանջել ու խեղանդամ դարձրել նրան:

Միմիայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը վերջնականապես ազատագրեց կնոջը, բարձրացրեց նրա արժանապատվությունը և դերը հասարակական-քաղաքական կյանքում:



# ԿԻՆԸ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԼԻԻՐԱՎ ՔԱՂԱՔԱՑԻՆ Է

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը ջարդ ու փշուր արեց կնոջն ստրկական վիճակի մեջ պահող բուրժուական օրենքները: Իր գոյության առաջին իսկ ամիսներին Խորհրդային իշխանությունն օրենսդրության ուժով ամենավճռական հեղաշրջում մտցրեց մինչև այդ կնոջ նկատմամբ յեղած վերաբերմունքի ու հայացքների մեջ:

«Այն օրենքներից, վորոնք կնոջը հպատակվողի դրության մեջ եյին դնում, քարը քարի վրա չի մնացել Խորհրդային հանրապետությունում» (Լենին, յերկ. հատ. 24, եջ՝ 468):

Խորհրդային կինն ազատ իրավունք ստացավ տղամարդու հետ հավասար՝ ընտրելու և ընտրվելու պետական օրգաններում, կանգնելու կառավարության ղեկի մոտ: Ստալինյան Սահմանադրությունն ավելի ևս ընդարձակեց ու ամրապնդեց նրա իրավունքները: Սահմանադրության 122-րդ հոդվածի հիման վրա, խորհրդային

կնոջը տղամարդուն հավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում: Մեր պետությունն ապահովում է կանանց այդ իրավունքների իրագործումը՝ կնոջը տղամարդուն հավասար իրավունք տալով աշխատանքի, աշխատանքի վարձատրության, հանգստի, սոցիալական ապահովագրության ու կրթության ասպարեզում, մոր ու մանկան շահերի պետական պաշտպանությամբ, կնոջը հղիության ժամանակ վճարովի արձակուրդ տալով, ծննդատների, մանկամսուրների ու մանկապարտեզների լայն ցանցով: Կնոջը տրված այդ իրավունքներն անխախտ օրենք են հանդիսանում և դրանց վոտնահարողները խստագույն պատժի յեն յենթարկվում:

Խորհրդային կանայք ակտիվորեն մասնակցում են յերկրի կառավարման գործին: ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի, Միութենական ու Ավտոնոմ հանրապետությունների գերագույն խորհուրդների և տեղական խորհուրդների ընտրություններն ամբողջ աշխարհին ցույց տվին խորհրդային կանանց քաղաքական ակտիվության աննախընթաց աճումը, խորհրդային ամբողջ



ժողովրդի հետ միասին նրանց բարոյական քաղաքական անխորտակելի միասնությունը և կուռ համախմբվածությունը մեր կուսակցության, մեր կառավարության և սիրելի առաջնորդ մեծ Ստալինի շուրջը: Այդ ընտրությունների ժամանակ հազարավոր կանայք արժանացան ժողովրդի վստահությանը և ընտրվեցին պետական ղեկավար օրգաններում:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի դեպուտատներից 189-ը կին են (16,5 տոկոսը), Միութենական և ավտոնոմ հանրապետությունների Գերագույն խորհուրդներում ընտրված են 848 կանայք: Միութենական հանրապետությունների Գերագույն խորհուրդների նախագահների և նախագահների տեղակալների թվում 9 կին կա (27,3 տոկոս), իսկ նախագահությունների կազմում՝ 27 (13,2 տոկոս): Ավտոնոմ հանրապետությունների Գերագույն խորհուրդների նախագահություններում 65 կին կա (22 տոկոս):

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի դեպուտատներից 65-ը կին են: Ավելի քան 422 հազար աշխատավոր կանայք ընտրվեցին աշխատավորների դեպուտատների տեղա-

կան խորհուրդներում (ամբողջ դեպուտատների համարյա 33 տոկոսը)։

Ահա թե ընկեր Ստալինի ղեկավարությամբ ինչպես են կենսագործվում Լենինի պատգամները՝ կնոջը յերկրի կառավարմանը մասնակից դարձնելու մասին։

# ԿԻՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԵՋ

Կանանց փաստական ազատագրությունը հնարավոր է միայն այն ժամանակ, յերբ վոչ միայն նրանք որենքով իրավահավասար կհամարվեն տղամարդկանց, այլև կազատվեն ընտանեկան հոգսերից և կկարողանան մասնակցել հասարակական-արտադրական աշխատանքին։

Դեռ 1919 թվին Մոսկվայի անկուսակցական բանվորների համաքաղաքային չորրորդ կոնֆերանսում, արտասանած իր ճառում Լենինն ասում եր՝

«Խորհրդային Ռուսաստանում կնոջ դրությունն այժմ այնպես է, վոր հանդիսանում է իդեալական, ամենաառաջավոր պետությունների տեսակետից։ Սակայն մենք մեզ ասում ենք, վոր դա, իհարկե, դեռևս միայն սկիզբն է...Կնոջ լիակատար ազա-



տագրության և նրանց տղամարդու հետ իրոք հավասար դարձնելու համար պետք է հասարակական տնտեսություն լինի, և պետք է, վոր կանայք մասնակցեն ընդհանուր արտադրողական աշխատանքում։ Այն ժամանակ կինը կգրավի այնպիսի դրություն, ինչպես տղամարդը»։ (Լենին, հատ. 24, եջ՝ 469)։

Մեծ ուսուցչի այդ կարևոր ցուցումն այսոր իրականություն է դարձել։ Ստալինյան հնգամյակների ընթացքում միլիոնավոր կանայք հնարավորություն ստացան աշխատելու սոցիալիստական արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում, խորհրդային հիմնարկություններում։ Յեթե 1929 թվին մեր խորհրդային ձեռնարկություններում ու հիմնարկություններում աշխատող կանանց թիվը հասնում եր 3· 304 հազար հոգու, ապա 1936 թվին այդ թիվը հասավ 8·492 հազարի, իսկ 1938 թվին կին բանվորուհիների ու ծառայողների թիվն ինը միլիոնից անցավ։

Նախախորհրդային շրջանում, արդյունաբերության մի շարք ճյուղերում կանանց համար մուտքը փակված եր։ Կանայք, վորպես առավել եժան բանվորական ուժ,

օգտագործվում էին հասարակ, սև աշխատանքների մեջ: Ըստ 1897 թվի մարդահամարի, ցարական Ռուսաստանում վարձու աշխատանքով զբաղված կանանց կեսից ավելին աշխատում էր կապիտալիստների, կալվածատերերի ու չինովնիկների մոտ, վորպես սպասուհի, իսկ կանանց քառորդ մասն էլ՝ կալվածատերերի ու կուլակների մոտ, վորպես բատրակուհի: Կապիտալիստական բոլոր յերկրներումն էլ կանանց աշխատանքը կիրառվում է բարձր վորակավորում չպահանջող ճյուղերում ու պրոֆեսիաներում:

Մեր յերկրում իրավահավասար խորհրդային կնոջ համար բոլոր պայմանները ստեղծված են իր ստեղծագործական ընդունակությունները զարգացնելու և իր ձգտումներին համապատասխան պրոֆեսիա ընտրելու համար: Մեզ մոտ չկա ժողովրդական տնտեսության վորևէ ճյուղ, վորտեղ կինը չաշխատի և այն էլ, վոչ միայն վորպես շարքային, այլև վորպես արտադրության հրամանատար: Լենին-Ստալինի կուսակցության աճեցրած ու կոփած տասնյակ հազարավոր տաղանդավոր կանայք արդյունաբերության մեջ, տրանսպորտում աշխատում են վորպես մեքենա-



վար, դիսպետչեր, ցեխի վարիչ, վարպետ, դիրեկտոր, գլխավոր ինժեներ, տրեստի կառավարիչ և այլն:

1937 թվին միայն խոշոր արդյունաբերության մեջ աշխատում էին մոտ հարյուր հազար կին ինժեներ և տեխնիկներ: Մեր յերկրում կա ավելի քան 50 հազար բժշկուհի:

Խորհրդային կանայք բոլոր աշխատանքների մեջ տղամարդուն հավասար աշխատավարձ են ստանում: Յեվ դրանումն էլ արտահայտվում է նրանց լիակատար իրավահավասարությունը տղամարդկանց հետ: Իսկ կապիտալիստական վոչ մի յերկրում կինը տղամարդուն հավասար աշխատավարձ չի ստանում: Այսպես օրինակ. ԱՄՆ-ում կնոջ աշխատավարձը տղամարդու՝ նույն աշխատանքի համար ստացված աշխատավարձից ցածր է 41,4 տոկոսով, Անգլիայում 54 տոկոսով, Ճապոնիայում 69,3 տոկոսով և այլն:

Կոլտնտեսային աշխատանքներում մասնակցում են ավելի քան 19 միլիոն կանայք: Կոլտնտեսային կարգերը հիմնովին ազատագրեցին գեղջկուհուն իր ծանր, անտանելի վիճակից: Կինը կոլտնտեսությու-

նում հնարավորություն տալով դառնալու ինքնուրույն և ակտիվորեն մասնակցելու տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքին։

«Կոլտնտեսությունն աշխօրերով ազատեց կնոջը և նրան դարձրեց ինքնուրույն։ Այժմ նա աշխատում է ոչ թե հոր համար, երբ նա աղջիկ է, ոչ թե ամուսնու համար, երբ նա ամուսնացած է, այլ ամենից առաջ իր համար է աշխատում։ Ահա այս էլ նշանակում է ազատագրել գեղջկուհի կնոջը, այս էլ նշանակում է կոլտնտեսային կարգ, որն աշխատավոր կնոջը հավասար է դարձնում ամեն մի աշխատավոր մարդու» (ՍՏԱԼԻՆ)։

Կինը կոլտնտեսության մեջ կատարած իր աշխատանքով տղամարդուց հետ չի մնում։ Բազմաթիվ կանայք ժրաջան աշխատանքով, տղամարդկանց հավասար և երբեմն էլ նրանցից ավել աշխօր են վաստակում։

Մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինն ամենից բարձր է գնահատում կոլտնտեսուհիների ուժը։ Հարվածային կոլտնտեսա-



կանների առաջին համագումարում արտասանած իր ճառի մեջ ընկեր Ստալինն ասաց՝

«Կանայք կոլտնտեսություններում մեծ ուժ են։ Գրվանի տակ պահել այդ ուժը, նշանակում է հանցագործություն թույլ տալ։ Մեր պարտականությունն է՝ առաջ քաշել կոլտնտեսություններում կանանց և գործի դնել այդ ուժը»։

Հանճարեղ ուսուցչի իմաստուն ցուցումները կենսագործվեցին և կենսագործվում են։ Տասնյակ հազարավոր կանայք առաջ են քաշվել կոլտնտեսությունների նախագահներ, նախագահների տեղակալներ, վարչության անդամներ, բրիգադիրներ, օղակավարներ, ֆերմայի վարիչներ և այլն։ Ղեկավար պոստերում էլ նրանք իրենց աշխատանքով, ոչնչով չեն զիջում տղամարդկանց։

Գյուղում օրեցօր ավելանում է մասնագետ կանանց, գյուղատնտեսների, զոոտեխնիկների, անասնաբույժների, լաբորանտների թիվը։ Կանայք աստիճանաբար տիրապետում են գյուղատնտեսական մեքենաների տեխնիկային։ Մեր երկրում մեծ քանակությամբ կալսիչավոր, կոմ-

բայնավար ու տրակտորիստ կանայք կան։ Կին տրակտորիստների շարժումն առանձնապես լայն չափեր ընդունեց անցած 1939 թվին։ Տիմիրյազևի անվան Գյուղատնտեսական Ակադեմիայի շքանշանակիր ուսանողուհիների հիանալի նախաձեռնությունը և ՀամԼԿՅԵՄ Կենտկոմի, ԽՍՀՄ Հողժողկոմատի ու ԽՍՀՄ Խորհտնտեսությունների Ժողկոմատի վորոշումը՝ յերկրին 100 հազար կին տրակտորիստներ տալու մասին, խանդավառությամբ ընդունվեց կոլտնտեսային կանանց կողմից։ Միմիայն անցած տարի, առանց արտադրությունից կտրվելու պատրաստվեցին 41 հազար կին տրակտորիստներ և ուսուցումը շարունակում են 70 հազար հոգի։ Մեզ մոտ, Հայաստանում, պատրաստվեցին 520 կին տրակտորիստներ։ 1940 թվին ավելի մեծ ծավալ կստանա կին տրակտորիստների պատրաստումը, հայրենիքին կտանք նոր, տասնյակ հազարավոր տրակտորիստներ, վորոնք արիաբար կհերկեն մեր սոցիալիստական անծայրածիր դաշտերը։



# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՅԵՐԿՐԻ ՀԵՐՈՍՈՒՀԻՆԵՐԸ

Ազատագրված խորհրդային կինը, բոլշևիկների կուսակցության և խորհրդային կառավարության ամենորյա հոգատարության պայմաններում աճել, անճանաչելի յե դարձել։ Ունենալով իր ստեղծագործական ընդունակությունները բազմակողմանիորեն զարգացնելու ամենալայն հնարավորություններ, նա սոցիալիզմի յերկրի տղամարդու հետ միասին հերոսական սխրագործություններ է կատարում թե աշխատանքի մեջ, թե յերկրի պաշտպանության բնագավառում, վստահորեն խիզախում է գիտության մեջ։

Խորհրդային կինը նոր տիպի կին է, վորըն իր գործերով ջարդ ու փշուր է անում կնոջ մասին յեղած ֆեոդալական—ճորտատիրական և բուրժուական ռեակցիոն հայացքները։

Ճակնդեղի դաշտերի հարվածային կոլտնտեսուհիների ընդունելությանը, 1935 թվին, ընկեր Ստալինն ասաց.

«Մենք լսեցինք արտասովոր կանանց, իսկ յես կասեյի աշխատանքի հերոսուհի կանանց ճառերը, վորովհետև միայն աշ-

խատանքի հերոսուհիները կարող էին հասնել այն հաջողությունների, վորոնց նրանք հասել են: Առաջ մեզանում այդպիսի կանայք չկային: Սրանք միանգամայն նոր մարդիկ են:

Հնում այդպիսի կանայք չկային և չէին կարող լինել»:

Միմիայն սոցիալիստական կարգերը կարող են ծնել Վալենտինա Գրիզոդուբովայի, Պոլինա Օսիպենկոյի և Մարինա Ռասկովայի նման Խորհրդային Միության հերոս ոդաչուներ, վորոնք առասպելական «Ռոդինա» ինքնաթիռով թանձր մառախուղի ու ամպերի միջով, անտառների ու լեռների վրայով, ջրի ու տայգայի վրայով 26 ժամ 29 րոպեյում թռան 6450 կիլոմետր, իսկ ուղիղ գծով՝ մոտ 6 հազար կիլոմետր տարածություն:

Ամբողջ խորհրդային ժողովրդին հայտնի յեն մեր յերկրի նշանավոր կին ստախանովականներ՝ Յեվդոկիա և Մարիա Վինոգրադովների, Մարիա Դեմչենկոյի, Մարինա Գնատենկոյի, Պաշա Անգելինայի, Պաշա Կովարդակի և մյուսների անունները, կանայք, վորոնցից ամեն մեկի անվան հետ մի շարժում է կապված:

Ստախանովական այդ առաջամարտիկ-



ների որինակով դաստիարակվել ու դաստիարակվում են հարյուր հազարավոր կանայք, վորոնք աշխատանքը համարելով փառքի, արիության և հերոսության գործ, փշրում են արտադրական հին նորմաները և իրենց ռեկորդներով սահմանում սոցիալիստական հասարակարգին արժանի նոր նորմաներ:

Մոսկվայի «Կալիբր» գործարանի ստախանովական, հղկող Յե. Ն. Սմետանովան փորատող-հղկող և կալիբրները տեսակավորող, յերկու պրոֆեսիաները համատեղելով՝ իր նորմաները կատարում է 220 տոկոսով: Մոսկվայի Լեպսեյի անվան էլեկտրոմոտորային գործարանի կին ստախանովականներ՝ Ա. Վ. Արժաննիկովան և Մ. Ի. Տիրնովան բարձրացնելով իրենց որական աշխատանքի արտադրողականությունը, նորմաները կատարում են 250—400 տոկոսով: Մոսկվայի Վ. Վ. Կույբիշևի անվան Տրանսֆորմատորի՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր գործարանի ռըմոտչիկ Մարուսյա Բլենկովան արտադրական բարձր ցուցանիշների յե հասել: Ստախանովական Մարուսյան իր դազգյահի սրտույոների թիվը 300-ից

հասցրել է 700-ի, դրանով ապացուցելով, վոր դազգյահները կարող են նորմալ կերպով աշխատել նաև կրկնապատկված արագությամբ: Այս նվաճման շնորհիվ ջուլհակներից շատերը իրենց նորմայի կատարումը հասցրել են 250 տոկոսի: Մարուսյան պայքարում է յուրաքանչյուր վայրկյանի տնտեսման համար և կարողացել է միաժամանակ 3 օպերացիա կատարել իր դազգյահի վրա:

Միայն Անդրերկաթուղու 6-րդ բաժանմունքում զանազան պոստերում աշխատում են ավելի քան 500 կին: Շոգեմեքենավարի օգնականներ՝ Մանիա Արուշովան, Վարդուշ Ջոհրաբյանը և Եկատերինա Կարաչուրովան հիանալի կերպով տիրապետում են իրենց աշխատանքի տեխնիկային և ստախանովյան աշխատանքով բարձր ցուցանիշներ են նվաճել գնացքների տեխնիկական արագությունն ավելացնելու և վառելիքը տնտեսելու գործում:

Կանանց ստախանովյան աշխատանքը վիթխարի չափերի յե հասնում գյուղատնտեսության ֆրոնտում: Այժմ բազմաթիվ կանայք կան, վորոնք կրկնապատիկ չափով գերազանցում են Մարիա Դեմչեն-



կոյի ռեկորդը— հեկտարից հավաքելով հազար և ավելի ցենտներ ճակնդեղ:

Ալտայան յերկրի (Սիբիր) Անդրեևյան ռայոնի քաղբաժնի անվան կոլտնտեսության օղակավարուհի Ա. Սերգեևան, կանանցից բաղկացած իր օղակի հետ միասին համառորեն պայքարում է հացահատիկի ռեկորդային բերք ստանալու համար: Լիովին կիրառելով ագրոկանոնները, 1938 թվին նրա օղակն ստացավ հեկտարից միջին հաշվով 32,7 ցենտներ հացահատիկ, իսկ 4 հեկտար առանձին հողամասից, վորի վրա օղակը հատուկ խնամքով և հաշվառումներով եր աշխատում, ստացավ 288 ցենտներ հացահատիկ, այսինքն յուրաքանչյուր հեկտարից 72 ցենտներ: 1938 թվին ընկ. Սերգեևայի օղակն իր հողամասի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացավ 36,9 ցենտներ հացահատիկ, իսկ 1000 քառ. մետրի վրա առանձնահատուկ աշխատանք կատարելով, այդ տարածությունից ստացավ 10,11 ցենտներ հիանալի հացահատիկ: Հեկտարների վերածելով դա նշանակում է, վոր ընկ. Սերգեևան մեկ հեկտարից ստացել է 101

ցենտներ և 10 կիլոգրամ, կամ 607 փութ մաքուր հացահատիկ։

Սիբիրում կարտոֆիլի յուրաքանչյուր հեկտարից սովորաբար, լավ տարիներին, միջին հաշվով ստացվում էր 70—80 ցենտներ բերք։ Բայց ահա Նովոսիբիրսկի մարզի Մարլինինյան ռայոնի «Կրասնի Պերեկոպ» կոլտնտեսության ողակավարուհի Աննա Կոնդրատևնա Ցուտկինան վորոշեց դեն շպրտել այդ հին նորման և ստանալ կարտոֆիլի ռեկորդային բերք։ Իր ողակի հետ քրտնաջան աշխատելով, նա 1936 թվին ստացավ հեկտարից 353 ցենտներ կարտոֆիլ, 1937 թվին 615 ցենտներ, 1938 թվին՝ 908,9 ցենտներ։ 1939 թ. փետրվարին, գյուղատնտեսության առաջավորների մարզային հավաքում ընկ. Ցուտկինան խոստացավ, ի պատիվ ՀամԿ(բ)Կ 18-րդ համագումարի, կարտոֆիլի մեկ հեկտարի բերքատվությունը հասցնել 1000 ցենտների։ Եվ ի՞նչ։ Նա հեկտարից ստացավ 1217 ցենտներ կարտոֆիլ, այսինքն՝ 117 ցենտներով գերազանցեց ամերիկյան ամենաբարձր ռեկորդը։

Բամբակի բերքատվության համաշխարհային ռեկորդը յեղել է հեկտարից 60



ցենտներ, իսկ ստախանովական կոլտնտեսուհի Ալիևան (Ադրբեջ-ն) հեկտարից ստացել է 151 ցենտներ բամբակ։

Ուկրաինայի ԽՍՀ Խարկովի մարզի Վոչանսկի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության անդամ, Ուկրաինական ԽՍՀ Գերագույն Խորհրդի դեպուտատ, շքանշանակիր կթվորուհի Խ. Ֆ. Ոսիլսկայան խնամում է եքսպոնատ— կով «Ակացիա»-յին, վորի որական կաթնատվությունը հասցրել է 54 լիտրի։

Հազարների յե հասնում ստախանովական կոլտնտեսուհիների թիվը Հայաստանում։ Հոկտեմբերյանի շրջանի Իգդալու գյուղի անվանի ստախանովական, կոմյերիտուհի Հրանուշ Բաղդասարյանը 1938 թվի բամբակահավաքի սեզոնում հավաքեց 11 հազար կիլոգրամ բամբակ, այսինքն՝ որական 150 կիլոգրամ և մասնակցեց Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին։

Ղամարլուի շրջանից անվանի ողակավարուհիներ՝ Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի դեպուտատ Նազիկ Ստեփանյանը (Վ. Աղբաշից), Վառինկա Փանոսյանը

(Զոհրաբյանից), Աշխեն Մովսիսյանը (Բաշնալույից) 1939 թվին յուրաքանչյուր հեկտարից ստացել են 50—55 ցենտներ բամբակ:

Հազարավոր ստախանովական կանայք անցյալ տարի մասնակցեցին Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին և նոր փորձով ու խանդավառությամբ լցված վերադարձան իրենց կոլտնտեսությունները, վորպեսզի ավելի բարձր ցուցանիշների հասնեն և 1940 թ. նորից գնան ցուցահանդես:

Կինը Խորհրդային Միության մեջ կուլտուրական մեծ ուժ է: Նրա առջև բաց են բոլոր դպրոցների, տեխնիկական դասընթացների և բարձրագույն ուսումնական հաստատությունների դռները: Բոլոր տիպի ուսումնական հաստատություններում էլ աղջիկներն ու կանայք թե քանակով և թե առաջադիմությամբ հետ չեն մնում տղամարդկանցից:

Մեր յերկրում բազմաթիվ կանայք խորանում են գիտության մեջ, ունեն տեսական ու գիտական աշխատություններ, գիտական բարձր կոչումներ: Ամբողջ յերկրին հայտնի յեն Գիտությունների Ակադե-



միայի անդամ— թղթակիցներ, պատմական գիտությունների դոկտոր Ա. Մ. Պանկրատովայի, տնտեսական գիտություն ների դոկտոր Մ. Ն. Սմեդ— Ֆալկների, տնտեսական գիտությունների դոկտոր Ռ. Ս. Լեվինայի, բժշկական գիտությունների դոկտոր Ռ. Ն. Պոդվիսոցկայի պատվավոր ակադեմիկոս Կ. Պ. Ուլիցկո—Սարոդանովայի, պրոֆեսոր Տրեվերի անունները:

Կանանցից բազմաթիվ տաղանդավոր գրողներ, արտիստներ, նկարիչներ, քանդակագործներ կան, վորոնցից շատ շատերն արժանացել են Խորհրդային Միության շքանշանների: Հայկական արվեստի տասնորյակի մասնակիցներից ԽՍՀ Միության շքանշաններ ստացողների մեջ մեծ թվով կանայք կան: Դրանց մեջ է Հայկական ԽՍՀ Ոպերայի և բալետի Պետական թատրոնի դերասանուհի, ԽՍՀՄ ժողովրդական արտիստ, Լենինի շքանշանով պարգևատրված՝ Հայկանուշ Դանիելյանը:

Ստալինյան Յերրորդ Հնգամյակում հսկայական միջոցներ են ներդրվում մեր յերկրի կուլտուրական շինարարության մեջ: Կուսակցության ու կառավարության ամենորյա հոգատարության պայմաննե-

րում խորհրդային կինը կուլտուրայի և արվեստի նորանոր բարձունքներ կնվաճի:

## ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ՄՈՐ ՅԵՎ ՄԱՆԿԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

Լենինը գրում է. «... Նույնիսկ լիակատար իրահավասարության ժամանակ էլ այնուամենայնիվ կնոջ փաստական ճնշվածությունը մնում է, վորովհետև նրա վրա յեն թափում ամբողջ տնային տնտեսությունը» (Լենին, Յերկ. հատ. 24, էջ 470):

Կնոջ այդ փաստական ճնշվածությունը վերացնելու և նրան լիովին ազատագրելու համար էլ Լենինն ասում էր՝

«Մենք կստեղծենք օրինակելի հիմնարկություններ, ճաշարաններ, մսուրներ, վորոնք կազատեն կնոջը այդ տնային տնտեսությունից» (Նույն տեղ):

Խորհրդային իշխանության տարիներին վիթխարի աշխատանք է կատարվել մեծ ուսուցչի ցուցումը գործի վերածելու ուղղությամբ: Բոլշևիկների կուսակցությունը և խորհրդային կառավարությունն անսահ-



ման հոգատարությամբ են շրջապատել մայրերին և մանուկներին: Աշխարհի ամենակարճ բանվորական օրը, մայրության և մանկության պահպանության աշխարհի լավագույն օրենսդրությունը և կուլտ-կենցաղային սպասարկման անընդհատ բարելավումը հիանալի պայմաններ են ստեղծել խորհրդային կնոջը տնային տնտեսության ծանրությունից ազատելու և հասարակական— քաղաքական ակտիվ աշխատանքի մեջ ներգրավելու համար: Մեր յերկրում այժմ ստեղծված է կուլտուր— կենցաղային հիմնարկների՝ ճաշարանների, գործարան— խոհանոցների, լվացքատների, կարի արհեստանոցների լայն ցանց:

Նախահեղափոխական Ռուսաստանում չկար հացի և վոչ մի գործարան, իսկ այժմ Խորհրդային Միության մեջ կա 825 խոշոր մեքենայացված հացի գործարան:

Մոր և մանկան նկատմամբ ստալինյան հոգատարությունը փայլուն կերպով արտահայտվեց 1936 թվին հրատարակված՝ աբորտներն արգելելու, ծննդկանների նյութական օգնությունն ավելացնելու, ծննդատների, մանկամսուրների և մանկապար-

տեղների և այլն ցանցն ընդարձակելու մասին օրենքի մեջ:

Ցարիզմի օրոք հղի բանվորուհիների 72,4 տոկոսն աշխատանքից չէր ազատվում ընդհուպ մինչև ծննդյան օրը, 12,1 տոկոսը միայն մեկ շաբաթ առաջ էր ազատվում: Ծննդկանների 37,1 տոկոսը ծննդաբերությունից հետո 2 շաբաթ էլ չեյին մնում ազատ, նրանք պարտավոր եյին աշխատանքի անցնել:

Խորհրդային բանվորուհիները և ծառայող կանայք ապահոված են 2 ամիս ֆիզիոլոգիական արձակուրդով, վորն ապահովվում է հաջող ծնունդը և մոր ու մանկան առողջությունը:

Ցարական Ռուսաստանում 1914 թվին հիվանդանոցներում և ծննդատներում 6800 մահճակալ կար: Մեզ մոտ դեռ 1937 թվի վերջերին ծննդականների համար կար 121,680 մահճակալ:

1937 թվին միայն Մոսկվայի մարզի Որեխովո-Զուևոյի շրջանում յեղել են 12 կոնսուլտացիա և 1840 մսուրա-մահճակալներ, այսինքն՝ նշանակելիորեն ավելի շատ, քան 1913 թ. են յեղել ամբողջ ցարական Ռուսաստանում:



Մինչև հեղափոխությունը մանկական պոլիկլինիկաներ և ամբուլատորիաներ, մոր ու մանկական տներ ամենևին չկային: Առ 1-ը հունվարի 1937 թվ. ԽՍՀՄ-ում կային 887 մանկական պոլիկլինիկա ու ամբուլատորիա, 457 մոր ու մանկան տուն:

1914 թվին Ցարական Ռուսաստանում մանկական մսուրներում կար 550 տեղ, իսկ մանկապարտեզներում ու հրապարակներում 7 հազար տեղ: 1938 թվին մեզ մոտ արդեն 1,8 միլիոն տեղ կար մշտական մանկամսուրներում և մանկապարտեզներում, չհաշված սեզոնային մանկամսուրները և մանկական հրապարակները, վորոնք ամեն տարի մի քանի միլիոն յերեխայի յեն սպասարկում:

Մոր և մանկան ողնող հիմնարկությունների լայն ցանց է ստեղծվել նաև Խորհրդային Հայաստանում: 1938 թվին Հայաստանում գործում եյին 64 բուժ. հիմնարկություն՝ 2727 մահճակալներով, այդ թվում 12 ծննդյան տներ 442 մահճակալներով: Գործում եյին 8 հատ կոլխոզային ծննդյան տներ 45 մահճակալներով, սեզոնային և մշտական մանկամսուրներ՝

624 հատ, վորտեղ ընդգրկված եյին 13,932 յերեխաներ:

Խորհրդային կառավարության 1936 թ. հունիսի 27-ի դեկրետով պետական նպաստ ե սահմանված բազմազավակ մայրերին:

1938 թվին բազմազավակ մայրերը պետությունից ստացել են 922 միլիոն, 246 հազար 300 ռուբլի նպաստ: ԽՍՀՄ ֆինժողկոմատի նախնական տվյալների համաձայն 1939 թվին բազմազավակ մայրերն ստացել են մեկ միլիարդ, 103 միլիոն, 877 հազար ռուբլի նպաստ:

Հազարավոր բազմազավակ մայրեր, վորոնք ունեն 9,10,11 և ավելի յերեխաներ 5—10 հազար ռուբլի և ավելի նպաստ են ստանում կառավարությունից: Գորկու մարզի Բոլշե— Մարեսևյան ռայոնի Բ. Ուզա գյուղի կոլտնտեսուհի Տ. Ա. Միխայլինան ունի 12 յերեխա, վորոնցից 6-ին նա ծնել ե վերջին 4 տարում: Բազմազավակ մայրերին ոգնելու վերաբերյալ վորոշման համաձայն նա պետությունից ստացել ե 36 հազար ռուբլի նպաստ:

Հայաստանում 1938 թվին նպաստ ստացող բազմազավակ մայրերի թիվը կազմում եր 3.110 հոգի, վորոնք նույն թվին պե-



տությունից ստացել են՝ 15 միլիոն 540 ռուբլի նպաստ: 1939 թ. ընթացքում բազմազավակ մայրերն ստացել են 20 միլիոն 410 հազար ռուբլի նպաստ: Մարտունու շրջանին, այդ նպատակի համար կառավարությանը բաց թողած գումարը կազմում եր ավելի քան մեկ միլիոն ռուբլի, իսկ Թալինի շրջանին՝ մոտ մեկ միլիոն ռուբլի:

Խորհրդային ժողովրդի նյութական-կուլտուրական մակարդակի հարաճուն վերելքը և մայրության ու մանկության նկատմամբ մեր կուսակցության ու կառավարության ցուցաբերած այսքան ջերմ հոգատարությունը պայմաններ ստեղծեցին, վորպեսզի մեր յերկրում ծննդաբերությունն արագորեն աճի և մահացությունն աստիճանաբար նվազի: Որինակ, 1937 թվին ծննդաբերությունը 1936 թվի համեմատությամբ աճել ե 18 տոկոսով:

Ստալինյան Յերրորդ հնգամյակի վերջին— 1942 թվին առողջապահության գծով պետական ծախսերը հասցվելու յեն 16,5 միլիարդ ռուբլու, 1937 թվի 10,3 միլիարդ ռուբլու դիմաց: Տեղերի թիվը մշտական մսուրներում և մանկապարտեզներում 1942 թվականին հասցվելու յե 4,2 միլիոնի 1937

թվի 1,8 միլիոն դիմաց։ Յերրորդ հնգամյակով նախատեսված միջոցառումները կգան էլ ավելի բարելավելու խորհրդային մայրերի և մանուկների դրությունը։

## ԿԻՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

Խորհրդային կանայք անսահմանորեն սիրում են մեր սոցիալիստական հայրենիքը, անհունորեն նվիրված են Լենին-Ստալինի կուսակցությանը և խորհրդային կառավարությանը։ Նրանք ամեն րոպե պատրաստ են արյան գնով պաշտպանել մեր չքնաղ հայրենիքը, Մեծ Հոկտեմբերի նվաճումները։ Դրա համար նրանք տղամարդկանց հետ միասին խորապես ուսումնասիրում են ռազմական տեխնիկան։ Մեր ժողովուրդը պարծենում է իր խիզախ կին օդաչուներով ու պարաշյուտիստներով, գնդացրորդներով ու վորոշիլովյան հրաձիգներով, պաշտպանական գործի հիանալի կազմակերպիչներով։

Խասանի և Խալխին Գոլի ռայոններում ճապոնական սամուրայների դեմ տեղի ու-



նեցած մարտերի ժամանակ, Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի մեր արյունակից ժողովուրդներին, ինչպես նաև ֆին աշխատավորության ազատագրելու համար մղվող հերոսական մարտերում բազմաթիվ կանայք աչքի ընկան իրենց խիզախությամբ ու սխրագործություններով։ Նրանցից շատերի կրծքերին այժմ փայլում են Խորհրդային Միության շքանշանները։ Հենց վերջերս, սպիտակ ֆինների դեմ մղված կռիվներում ցուցաբերած մարտական ծառայությունների համար, 22 տարեկան սանիտարուհի Տատյանա Վիտոլդովնա Բիտովը խորհրդային կառավարության կողմից արժանացավ բարձր պարգևի՝ Կարմիր դրոշի շքանշանի։ Բժշկական քույր Կ. Ա. Ռուսանովան պարգևատրվեց «Մարտական ծառայությունների համար» մեդալով։ Նրանց հերոսությունը վոգևորում է խորհրդային միլիոնավոր կանանց։

Պաշը-Ավիաքիմի, Կարմիր Խաչի և պաշտպանական մյուս կազմակերպությունների մեջ միլիոնավոր կանայք են ներգրավված։ Շատ կանայք իրենք են ղեկավարում այդ կազմակերպությունները։

Երևանի Տրամ–ինստիտուտի Պաշը–Ավիաքիմի կազմակերպության նախագահն է կոմյերիտուհի, Գաղխորհրդի դեպուտատ Սեդա Խաչատրյանը: Նա հանձնել է պաշտպանական 6 նորմա և իր օրինակը տարածում է իրենց կազմակերպության մյուս անդամների մեջ: Պետական Համալսարանի պրոֆեսոր–դասախոսական կազմի Պաշը–Ավիաքիմի կազմակերպության նախագահն է ասիստենտ Աշխեն Հարությունյանը: Նա հանձնել է պաշտպանական մի քանի նորմա և իր ակտիվ աշխատանքով պրոֆեսոր–դասախոսներին ներգրավել է պաշտպանական աշխատանքների մեջ: Անտառափորձակայանի ավագ գիտական աշխատող, կուսակցության անդամ Արևիկ Բաղդասարյանը հանձնել է պաշտպանական 4 նորմա: Այժմ նա պարապում է հակաօդային պաշտպանության խմբակների հետ: Այսպիսի օրինակները բազմաթիվ են:



Կանանց միջազգային կոմունիստական օրը, Մարտի 8–ը Խորհրդային Միության մեջ վերածվել է համաժողովրդական մեծ տոնի: Այս տարի Մարտի 8–ի տոնակատա-



րությունը կանցնի ավելի մեծ ցնծությամբ և ամբողջ աշխարհին ցույց կտա խորհրդային կանանց անսահման սերն ու նվիրվածությունը և համախմբվածությունը բոլշևիկների կուսակցության, խորհրդային կառավարության և աշխատավորության սիրելի ուսուցիչ ու հարազատ հայր մեծ Ստալինի շուրջը:

# ԴԱՀԻՃ ՄԱՆՆԵՐՀԵՅՄԻ „ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ"

*Մաններհեյմյան Ֆինլանդիայի կյանքին վերաբերող մռայլ փաստերը, վոր մենք տպագրում ենք ստորև Ռ. Ռասկինենի հոդվածով, փարատում են լրիվին անհիմն այն առասպելը «Ֆիննական մեծ դեմոկրատիայի» մասին, «դեմոկրատիայի ազատ Ֆինլանդիայի» մասին, վոր այնպիսի մեծ յեռանդով (և ինչո՞ւ չէ, լա՛վ է վճարված) ուռցնում են և՛ բուրժուական մամուլի գրչակները, և «սոցիալ-դեմոկրատիայի» շարքերին պատկանող լակեյները: Փաստերը համառ բան են, և սուտ, հիստերիկ բացականչությունների ու մինիստրական պոռնկախոսության վոչ մի տեսակի հեղեղներով հնարավոր չէ թաքցնել այն իրականությունը, վոր տաններների և մաններհեյմների Ֆինլանդիան սպիտակ*



*տեռորի յերկիր է, աշխատավորների իրավազրկության և անողոք շահագործման յերկիր:*

## «ԱՐԱԳ, ԽՂՃՈՎ ՅԵՎ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԴԱՏԱՍՏԱՆ»

1937 *թվի գարնանը ֆինլանդական Կերավա փոքրիկ քաղաքի մի քանի բանվոր-բանվորուհիներ կանգնեցին դատարանի առաջ: Նրանց մեղադրում եյին այն բանում, վոր նրանք հեղափոխական յերգեր եյին յերգել, փող եյին հավաքել քաղաքական կալանավորների համար և կարմիր դրոշակ եյին կախել բանվորական ակումբում: Այդ «վոճրագործությունները» նրանք կատարել եյին* 1931—1932 *թվականներին: Այն փաստը, վոր մեղադրանքը հարուցվել եր հինգ տարի անց, ինքնին արդեն կասկածելի յեր: Ե՛լ ավելի կասկածելի յեր այն բանը, վոր ամբողջ մեղադրանքը կառուցված եր մեղադրյալներից մեկի՝ Պրենրոսի խոսքերի վրա, վորը, բոլոր տվյալների համաձայն անմեղսագրելի յեր (հոգեկան հիվանդ):*

Այդ կապակցությամբ հայտնի դարձավ բանվոր Նորման Գրենրոսի տրագեդիան։

Մի անգամ ամռանը, 1933 թվին, Գրենրոսի մոտ եյին յեկել նրա հետ աշխատող յերկու ընկեր, վորպեսզի նրան նախազգուշացնեն մի մարդուց, վորը կասկածվում եր գաղտնի վոստիկանության ագենտ լինելու մեջ և նրան հաղորդել եյին, թե այդ մարդը սպառնացել եր «այսոր դատաստան տեսնել կոմունիստների հետ»։ Յերեկոյան Գրենրոսի բնակարանն եր ներկայացել մի մարդ և ատրճանակը ձեռքին պահանջել, վոր ներս թողնեն։ Յերբ Գրենրոսը հրաժարվել եր կատարելու այդ ջարդարարի պահանջը, նա ատրճանակը ուղղել եր Գրենրոսի վրա։ Բայց վերջինս կանխել եր նրան և, ինքը կրակելով, սպանել նրան։ Գիշերային այցելուն իսկապես ել պահնորդական բաժնի ագենտ եր յեղել։

Դատարանում Գրենրոսը հայտարարել եր, թե ստիպված եր յեղել պաշտպանվել, և իբրև վկա մատնանշել եր իր հետ աշխատող այն յերկու ընկերներին, վորոնք նախազգուշացրել եյին նրան։ Բայց նրան չհաջողվեց տեսնել այդ վկաներին՝ վկաների աթոռի վրա. նրանք վաղուց ձերբա-



կալվել եյին և կալանքի յերկարատև ժամկետն եյին անցկացնում։ Գրենրոսին դատապարտել եյին ութ տարվա բանտարկության։ Այդպես եր սկսվել նրա բազմաչարչար ուղին ֆինլանդիական բանտերում — փորձությունների և տանջանքների ուղին։ Յերկարատև կալանքից հետո Գրենրոսը բանտում խելագարվել եր, նրան գժանոց եյին ուղարկել։

Այսպես ուրեմն ֆիննական դասակարգային դատարանը կերավացի բանվորների նկատմամբ դաժան դատավճիռ ընդունեց հոգեկան հիվանդի հայտարարությունների հիման վրա։

## ՏԱՆՋԱՆՔԻ ԿԱՄԵՐԱՅՈՒՄ

Իր ցանկացած ցուցմունքները ստանալու համար սպիտակ-ֆիննական արդարադատությունը կիրառում ե մի այլ մեթոդ. դրա եյությունն այն ե, վոր դատավարության վկաներին անց են կացնում մի հատուկ սենյակով — «վկաների սենյակով», վորտեղ նրանք «մշակման» և «ճնշման» են յենթարկվում պահնորդական բաժնի ագենտների կողմից (մինչև իսկ խոշտանգվում են)։ Այսպես, 1933 թվին «Աբբեյ-

ներ ցույցունք» թերթի խմբագրին «վկաների սենյակում» դանակներով «մշակման» ենթարկեցին և հետո կիսամեռ վիճակում դատարանի շենքից դուրս շպրտեցին: Մի այլ դատավորության ժամանակ (Մենտսելեցի լապուասականների դեմ) մեղադրյալի բարեկամները հենց դատարանում ահաբեկում էին վկաներին, սպառնալով սպանել, և վկաները չհամարձակվեցին ճշմարտությունն ասել լապուասականների մասին:

«Վկաների սենյակն» օգտագործվելու և անամոթաբար վախեցնելու մեթոդն առանձնապես լայն չափերով գործադրվեց Անտիկայնենի դատավարության ժամանակ: Երբ Խորհրդային Միությունից եկած վկան դատարանում Անտիկայնենի օգտին ելույթ ունենալուց հետո մտավ վկաների սենյակը, նրան դիմավորեցին այսպիսի բացականչություններով:

— Դու Ֆինլանդիայից ողջ չես հեռանա, չո՛ւն:

Պահնորդական բաժնի ագենտները նրան բանտ սպառնացին, սպիտակ-գվարդիականները փող առաջարկեցին, խոստանալով 30 հազար մարկ, եթե Անտիկայնենի դեմ



«ցուցմունքներ» տա: Ահաբեկման ենթարկվեցին ոչ միայն վկաները. ուժեղագույն ճնշում գործադրվեց նաև պաշտպանների վրա:

1930 թվի հոկտեմբերի սկզբին դատարանի առաջ պետք է կանգնեյին ցրված բանվորական կազմակերպության ակտիվիստներից և անդամներից 30 հոգի (հարյուրավոր ձերբակալվածներից): Այն բանից հետո, երբ ձերբակալվեցին բանվորական շարժմանը համակրող բոլոր փաստաբանները, Ֆինլանդիայում, ի հարկե, «չճարվեց» ո՛չ մի պաշտպան մեղադրված պրոլետարների համար: Մեղադրյալների ընկերներին հաջողվեց, վերջի վերջո, որպես պաշտպան կանչել շվեդացի հայտնի մի փաստաբանի, և դատարանը ձևականորեն թույլ տվեց նրան: Բայց երբ փաստաբանը Ֆինլանդիա եկավ, լապուասականները նրա դեմ սանձարձակ կամպանիա սկսեցին և բացահայտ կերպով պահանջեցին, որ իսկույն և եթ հեռանա երկրից:

Այսպես է աշխատում սպիտակ-ֆիննական արդարադատությունը բանդիտական խմբերի հետ ձեռք-ձեռքի տված:

## ԼԱՊՈՒԱՍԱԿԱՆՆԵՐԻ ԱՆԿԱՐԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1930 թվի հուլիսի 5-ին զինված լապուասականները ներխուժեցին ռայխստագի շենքը և բռնի կերպով դուրս տարան պառլամենտի յերկու անդամի, վորոնք բանվորների և չքավոր գյուղացիների դեպուտատներ եյին: Դեպուտատներին քաշ տվին լապուասականների գլխավոր կայանը և անողոք խոշտանգումների յենթարկեցին: Իշխանությունները ձերբակալեցին... վոչ թե հանցագործներին, վորոնք հայտնի եյին վորպես լապուասական շարժման ակտիվիստներ, այլ... սոցիալիստ բանվորների և մանր գյուղացիների մնացած 26 դեպուտատներին: Յերկու որ հետո պառլամենտի այդ յերկու առևանգված դեպուտատները լապուասականների կողմից հանձնվեցին վոստիկանությանը և անմիջապես բանտ նետվեցին: Մի քանի շաբաթից ձերբակալվածներին «հայրենիքի դավաճանության» համար 5 տարվա բանտարկության դատապարտեցին, ըստ վորում կառավարությունը նույնիսկ նեղություն



չքաշեց մեղադրանքը վորևե փաստով հաստատելու:

Նման տեռորիստական գործողությունների թվին է պատկանում նաև այն բանը, վոր իրենց գրաված պոստերից քշեցին մունիցիպալիտետների 959 դեպուտատների, վորոնք որինական ճանապարհով ընտրվել եյին վորպես աշխատավորների ներկայացուցիչներ:

## ՀԵ՛Տ, ԴԵՊԻ ԻՆԿՎԻԶԻՑԻԱՆ

Ինկվիզիցիայի ամենավատթար ժամանակներում միայն գործադրվել են այնպիսի տանջանքներ և պրիոմներ, վորոնցով ֆիննական «դատավորները» հեղափոխական յերիտասարդ բանվորներին հարկադրում եյին սուտ ցուցմունքներ տալ Ռովանիեմիում դատվող այսպես կոչված «դատավարության» ժամանակ:

Մի գիշեր Ռովանիեմիում միաժամանակ հինգ տեղում հրդեհ եր ծագել: Այդ հրկիզումը վերագրվել եր կոմունիստներին: 24 յերիտասարդ բանվորներ (նրանց մեջ շատերն անչափահաս) ձերբակալվեցին: Դատարանի դահլիճում մեղադրյալները

մանրամասնորեն նկարագրեցին անօրենք խոշտանգումները, վորոնց յենթարկվել ե- յին նրանք պահնորդական բաժնում և վո- րոնց ոգնությամբ «ցուցմունքներ» եյին ստացվել: Բանվորներից մեկը պատմեց, վոր խոշտանգումների ժամանակ ինքը քա- նիցս ուշաթափվել եր: Քանի վոր նա վոստիկանությանը չեր տվել պահանջվող «ցուցմունքները», նրան նստեցրել եյին ավտոմեքենա և տարել անտառ: Այնտեղ սպառնացել եյին գնդակահարել և ստիպել եյին փորել սեփական գերեզմանը: Նրան այնպես եյին ծեծել, վոր ամբողջ մեջքը դարձրել եյին համատարած արյունոտ զանգված: Դրանից հետո դցել եյին մրջ- նանոցը, ապա դրել խարույկի վրա: Այդ- պիսի յեղանակներով նրան ստիպում եյին սուտ ցուցմունք տալու:

Բուրժուական իրավաբան Ցե. Զեպտու- նինը, վորն ուզում եր իր վրա վերցնել Թուլանիեմում տարվող «դատավարու- թյամբ» մեղադրվածների պաշտպանու- թյունը, Հելսինգֆորս ուղևորվելիս հար- ձակման եր յենթարկվել: Լապուասական բանդաները կանգնեցրել եյին նրան և ա- նողոք ծեծի յենթարկել, ստիպելով դրա-



վոր հայտարարություն տալ այն մասին, վոր այլևս չի խառնվելու այդ գործին:

Այդպիսի խիստ հիմնավոր «նախապատ- րաստությունից» հետո «դատավարությու- նը» կայացավ: Թեպետ և մեղադրյալները դատարանում հրաժարվեցին խոշտանգում- ների միջոցով կորզված «ցուցմունքից», բայց և այնպես նրանցից յոթին դատա- պարտեցին 10 տարվա բանտարկության: Բացի դրանից, նրանց դատապարտեցին տուգանքի՝ 2·654·000 ֆիննական մարկի ընդհանուր գումարով, այսինքն մի գու- մար, վոր համապատասխանում եր վառ- ված ատաղձագործարանի դիմաց կապիտա- լիստների ստացած ապահովագրական գու- մարին:

## ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԳՈՐԾՈՒՄ Ե ՌԵԱԿՑԻԱՅԻ ՀԵՏ ՄԻԱՍԻՆ

Ֆիննական բանվոր դասակարգի մղած պայքարում նրա թշնամիներն են հան- դիսանում վոչ միայն բուրժուազիան և կալվածատերերը, այլև ռեակցիոն «սո- ցիալ-դեմոկրատական առաջնորդները»:

ժանրամասնորեն նկարագրեցին ամբողջ խուշտանդումները, վորոնց յենթարկվել եյին նրանք պահնորդական բաժնում և վորոնց ոգնությամբ «ցուցմունքներ» եյին ստացվել: Բանվորներից մեկը պատմեց, վոր խուշտանդումների ժամանակ ինքը քանիցս ուշաթափվել եր: Քանի վոր նա վոստիկանությանը չեր տվել պահանջվող «ցուցմունքները», նրան նստեցրել եյին ավտոմեքենա և տարել անտառ: Այնտեղ սպառնացել եյին գնդակահարել և ստիպել եյին փորել սեփական գերեզմանը: Նրան այնպես եյին ծեծել, վոր ամբողջ մեջքը դարձրել եյին համատարած արյունոտ զանգված: Դրանից հետո դցել եյին մրջնանոցը, ապա դրել խարույկի վրա: Այդպիսի յեղանակներով նրան ստիպում եյին սուտ ցուցմունք տալու:

Բուրժուական իրավաբան Ցե. Զեպտունինը, վորն ուզում եր իր վրա վերցնել Թուլանիեմում տարվող «դատավարության» մեղադրյալների պաշտպանությունը, Հելսինգֆորս ուղեվորվելիս հարձակման եր յենթարկվել: Լապուասական բանդաները կանգնեցրել եյին նրան և անողոք ծեծի յենթարկել, ստիպելով գրա-



վոր հայտարարություն տալ այն մասին, վոր այլևս չի խառնվելու այդ գործին:

Այդպիսի խիստ հիմնավոր «նախապատրաստությունից» հետո «դատավարությունը» կայացավ: Թեպետ և մեղադրյալները դատարանում հրաժարվեցին խուշտանդումների միջոցով կորզված «ցուցմունքից», բայց և այնպես նրանցից յոթին դատապարտեցին 10 տարվա բանտարկության: Բացի դրանից, նրանց դատապարտեցին տուգանքի՝ 2.654.000 ֆիննական մարկի ընդհանուր գումարով, այսինքն մի գումար, վոր համապատասխանում եր վառված ատաղձագործարանի դիմաց կապիտալիստների ստացած ապահովագրական գումարին:

## ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԳՈՐԾՈՒՄ Ե ՌԵԱԿՑԻԱՅԻ ՀԵՏ ՄԻԱՍԻՆ

Ֆիննական բանվոր դասակարգի մղած պայքարում նրա թշնամիներն են հանդիսանում վոչ միայն բուրժուազիան և կալվածատերերը, այլև ռեակցիոն «սոցիալ-դեմոկրատական առաջնորդները»:

Վաղուց արդեն թե՛ մեկի և թե՛ մյուսների աչքի փուշն էին հանդիսանում պրոֆմիությունները, քանի որ նրանք ղեկավարում էին բանվորական յելույթները շահագործողների դեմ դասակարգային պայքարի հիման վրա: Ռեֆորմիստները բոլոր միջոցներով ձգտում էին պառակտել և տապալել բանվորների պրոֆկազմակերպությունները: Պրոֆմիությունների Ամստերդամյան ինտերնացիոնալն իր վրա վերցրեց Ֆինլանդիայում նոր, ռեֆորմիստական պրոֆմիություն ստեղծելու նախաձեռնությունը: Բայց նրանց բոլոր ջանքերը փշրվեցին միություններում համախմբված կոմունիստ, սոցիալ-դեմոկրատ և անկուսակցական բանվորների մարտական տրադիցիաների դիմաց: Ֆինլանդիայի սոցիալ-դեմոկրատական «առաջնորդները» և Ամստերդամյան պրոֆմիութենական բյուրոկրատները ֆիննական բանվոր դասակարգի դեմ մղվող պայքարում չքաշվեցին սերտորեն միանալու ֆիննական ռեակցիայի հետ: Սարքվեց վիթխարի մի «դատավարություն», որը նպատակ ուներ ցրել տալ պրոֆմիությունները և դրանով իսկ լիկվիդացիայի յենթարկել նրանց ազդեցությունը ֆիննական բանվոր դա-



սակարգի լայն մասսաների վրա:

Հիմնավորելով պրոֆմիություններն արգելելու իր պահանջը, պետական դատախազը հայտարարեց, որ «պրոֆմիությունների միավորումը միանգամայն անվիճելիորեն հեղափոխական կազմակերպություն է հանդիսանում, քանի որ նա «շարունակ իր համակրանքն է արտահայտում Խորհրդային Միության նկատմամբ, հանդես է գալիս քաղաքական կալանավորների պաշտպանությամբ և կազմակերպում է շտրեյկբրեխերների հալածանք»:

Բայց չնայած նրան, որ «սոցիալ-դեմոկրատիան» խիստ յեռանդուն ագիտացիա մղեց բանվորների մեջ, որպեսզի նրանք չպաշտպանեն իրենց կազմակերպությունը դատարանի առաջ, թեև Հելսինգֆորսում գտնվող բանվորական բանակը, որը գտնվում էր սոցիալ-դեմոկրատների «առաջնորդների» ձեռքում, հրաժարվեց կազմակերպություններին տալ նրանց սեփական ավանդները և այդպիսով ջլատեց պաշտպանության գործը,—այնուամենայնիվ 200 բանվոր ամենահեռավոր տեղերից Հելսինգֆորս յեկան «դատավարության», որպեսզի պաշտպանեն իրենց կազմակերպությունները: Դրանից բացի, դատարանը

յերկրի զանազան ծայրերից սաճացավ բազմաթիվ դրավոր բողոքներ: Դրանց մեջ կար նաև մի նամակ բանակից, վորը դատարանը հրապարակեց նրա համար միայն, վորպեսզի գործ ակսի նամակի հեղինակի դեմ: Այդ նամակում ասված ե.

«...Մենք, զինվորական համազգեստ հագած բանվորներս, բողոքում ենք պրոֆմիությունները ցրելու փորձերի դեմ: Դուք պատերազմի, ինտերվենցիայի, թալանչիական պատերազմի յեք պատրաստվում ընդդեմ Խորհրդային Միության...» Թիկունքում թշնամի չունենալու նպատակով դուք ուզում եք ցրել պրոֆմիությունները, բայց ձեր պատերազմը մենք քաղաքացիական պատերազմի կվերածենք...»:

Ռեակցիոն բուրժուազիան չեր կարողանա տապալել և խեղդել պրոֆմիութենական շարժումը, յեթե բանվոր դասակարգի շարքերում գտնվող թշնամին—սոցիալ-դեմոկրատական ռեակցիոն «առաջնորդները» չակսեյին այն քայքայել ներսից: Նրանց ծրագիրն այսպիսին եր. «Յեթե մեզ հաջողվի ջախջախել պրոֆմիությունների միավորումը և ստեղծել նորը, մերը, այն ժամանակ վոստիկանության համար հեշտ կլինի մեկ անգամ ընդմիշտ կողպեք դնել բանվորական միությունների դռներին»:



ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

# ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

## ԿՈՈՐԴԻՆԱՑԻԱՅԻ ԱՆԳԼՈ-ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

Սա այն մշտական կոմիտեն ե, վորը ստեղծվեց անգլո-ֆրանսիական զինվորական խորհրդի նիստում 1939 թվի նոյեմբերի 17-ին և իր աշխատանքը սկսեց դեկտեմբերի 6-ին: Կոմիտեյի նպատակների մասին Անգլիայի և Ֆրանսիայի վարչապետների համատեղ դեկլարացիայում ասված է հետևյալը.

«Բրիտանական և Ֆրանսիական կառավարությունները վորոշեցին պատերազմի սկզբից իսկ, ըստ հնարավորության լիակատար չափով կոորդինացիայի յենթարկել յերկու յերկրների տնտեսական-պատերազմական ջանքերը: Այդ նպատակով անհապաղ քայլեր կատարվեցին: Այժմ այն միջոցները, վոր արդեն կիրառել են կյանքում յերկու կառավարությունները, ուժեղացված և ընդարձակված են, այն հաշվով, վոր ապահովվի համատեղ գործողությունը հետևյալ բնագավառներում— ավիացիա, ռազմամթերք և հումք, նավթ, պարեն, նավագնացություն, տնտեսական պատերազմ: Յերկու կառավարությունների կողմից նախատեսված նոր միջոցները կապահովեն յերկու յերկրների հումքային ռեսուրսների, արտադրության միջոցների, նավերի տոննաժի և այլի լավագույն օգտագործումն ընդհանուր շահերի համար:

Յերկու յերկրները հետագայում կհամաձայնեցնեն իրենց իմպորտային ծրագիրը և կխուսափեն մրցումից արտասահմանյան գնումների գործում:

Այդ խնդիրների կատարումը դրված է անհապաղ ստեղծվող անգլո-ֆրանսիական



գործադիր կոմիտեների վրա կոորդինացիայի անգլո-ֆրանսիական կոմիտեյի ղեկավարության ներքո»:

Այս կոմիտեյի ստեղծումը, ճիշտ այնպես, ինչպես ֆինանսական համաձայնության կնքումը Անգլիայի և Ֆրանսիայի միջև դեկտեմբերի 4-ին, ապացուցում է, վոր անգլո-ֆրանսիական ռազմական բլոկը մտադիր է շարունակել և ուժեղացնել իր սկսած իմպերիալիստական պատերազմը: Իրենց տնտեսական և ֆինանսական հզոր ռեսուրսների միավորումով անգլո-ֆրանսիական իմպերիալիստները հույս ունեն հասնել Գերմանիայի ռազմական ջախջախմանը և նրա արտամղմանը համաշխարհային շուկաներից:

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԵՔՍՊՈՐՏԻ ԲԼՈԿԱԴԱ

Այն միջոցառումների սիստեմն է, վոր կիրառում է ներկայումս Անգլիան Գերմանիայի եկոնոմիկան ջլատելու, նրա շուկաները զավթելու և իր համաշխարհային տիրապետությունն ապահովելու համար:

Բլոկադան արտահայտվում է այն բանով, վոր անգլիական ռազմա-ծովային ուժերի օգնությամբ պետք է խափանվեն

Գերմանիայի առևտրական հարաբերությունները ծովային առևտուր կատարող չեզոք յերկրների, օրինակ՝ Բելգիայի, Հոլանդիայի, սկանդինավյան յերկրների հետ: Այս նպատակով բրիտանական կառավարությունը, համաձայն նրա 1939 թվի նոյեմբերի 28-ի ուկազի, 1) արգելեց ապրանքների ամեն տեսակի ծովային փոխադրումները գերմանական նավահանգիստներից. 2) արգելեց գերմանական ծագում ունեցող բոլոր ապրանքների արտահանումը չեզոք յերկրներից. 3) պահանջեց, վոր գերմանական ապրանքներ փոխադրող բոլոր նավերը մտնեն անգլիական կամ ֆրանսիական նավահանգիստները, վորտեղ այդ բեռները յենթակա յեն սեկվեստրի (արգելանք դնելու) և հարկադիր վաճառքի. 4) պահանջեց, վոր չեզոք յերկրների նավերը, վորոնք վորևե բեռով դուրս են գալիս այն պետությունների նավահանգիստներից, վորտեղ Գերմանիան մուտք ունի, գնան բրիտանական կամ ֆրանսիական նավահանգիստները ստուգման յենթարկվելու:

Այս ուկազը հանդիսանում է հետագա խախտումը միջազգային իրավունքի այն սկզբունքների, վոր Անգլիան վոտնատակ է



տալիս պատերազմի սկզբից: Միևնույն ժամանակ գերմանական եքսպորտի բլոկադան քարուքանդ է անում համաշխարհային առևտուրը, կործանարար կերպով արտահայտվելով գլխավորապես ծովային չեզոք յերկրների տնտեսության վրա: Գերմանիան, վորը մի քանի շուկաների կորուստը կոմպենսացիայի յե յենթարկվում Խորհրդային Միության և Հարավարևելյան Եվրոպայի յերկրների հետ առևտուր անելով, պատերազմի առաջին յերեք ամսում պահպանեց իր նախապատերազմյան եքսպորտի 80%-ը: Իսկ փոքր չեզոք երկրների արդյունաբերությունը, վորն աշխատում է ներմուծվող հումքով, ստիպված յեղավ զգալիորեն կրճատել իր արտադրությունը, վորը գործազրկության ուժեղ աճում առաջացրեց: Այդ յերկրների ազգաբնակչությունը նորանոր զրկանքների յե յենթարկվում այսպես կոչված «կոնտրաբանդ» բեռների բռնագրավման պատճառով, բեռներ, վորոնց մեջ մտնում են ժողովրդական սպառման համար սահմանված առաջին անհրաժեշտության առարկաները: Պատերազմի 13 շաբաթվա ընթացքում Անգլիան

և Ֆրանսիան բռնել են 735 հազար տոնն այդպիսի ապրանք:

Ծովային բլոկադայի հետևանքով զարգացած ականային պատերազմը ծովում իր հետևից բերեց չեզոք յերկրների նավագնացության մեծ կորուստներ: Ինչպես հաղորդում է գերմանական «Բյոլնիշե ցայտունգ» թերթը, պատերազմի 3 ամսում կործանվել են 68 չեզոք նավեր 224,569 տոննա ջրատարողությամբ: Այդ նավերի կործանման հիմնական պատճառը անգլիական բլոկադան է: Բլոկադան իրագործելու նպատակով անգլիացիներն իրենց բռնած չեզոք նավերին ստիպում են քննության համար գնալ հատկապես առանձնացված կոնտրոլ կայանները Անգլիայի հարավարևելյան ափին, Պա դե Կալե նեղուցի մոտ: Նեղուցով անցնող բոլոր նավերը կոնտրոլի յենթարկելու համար անգլիացիներն ականապատել են այն, նավագնացության համար թողնելով մի նեղ շերտ Անգլիայի ափերի յերկայնքով: Այդ ծովային ռայոնը ներկայումս ամենից վտանգավոր ռայոնն է հանդիսանում՝ այնտեղ յերևան յեկած բազմաթիվ ականների հետևանքով: Չնայած դրան՝ Անգլիան այդտեղ է



քաշում չեզոք նավերը ստուգման և բեռների բռնագրավման համար:

Շատ յերկրներ բողոք հայտնեցին գերմանական ապրանքների բլոկադայի ուժեղացման դեմ: Դեկտեմբերի 10-ին Խորհրդային Միությունը բրիտանական կառավարությանը մի նոտա ուղարկեց, վորը բողոք է հայտնում հիշյալ բոլոր միջոցառումների դեմ և հայտարարում է, վոր «ԽՍՀ Միության կառավարությունն իրեն իրավունք է վերապահում հատուցում պահանջելու կրած վնասների դիմաց, յեթե ԽՍՀՄ-ի պետական առևտրական նավը հարկադրաբար տարվի բրիտանական կամ ֆրանսիական նավահանգիստ, կամ յեթե սույն թվի նոյեմբերի 28-ի Ուկազի կիրառումով ԽՍՀՄ-ի արտաքին առևտրին վորևէ տեսակի այլ վնասներ հասցվեն»:

## ԴՈՄԻՆԻՈՆՆԵՐ

Դոմինիոն անգլերեն նշանակում է տիրակալություն: Այսպես են կոչվում բրիտանական կայսրության ինքնավար մասերը, այսինքն՝ նրա, այն գաղութները, վորոնք պետական-իրավական անկախություն են վայելում, առաջվա պես անտե-

տական և ռազմա-քաղաքական կախման մեջ մնալով մետրոպոլիայի— Անգլիայի նկատմամբ:

Բրիտանական դոմինիոնները բռնում են 18,8 միլիոն քառակուսի կիլոմետր տարածություն (Բրիտանական կայսրության ընդհանուր տարածությունը 34,4 միլիոն քառակուսի կիլոմետր է) 31 միլիոն բնակչությամբ (ամբողջ կայսրության բնակիչների թիվը 486,7 միլիոն է): Դոմինիոններն ընդամենը 6 են— Կանադա, Էյրե (Իռլանդիա), Ավստրալիական միություն, Նոր Զելանդիա, Հարավ— Աֆրիկական միություն, Նյուֆաունդլենդ:

Անգլիան ձգտում է դոմինիոնները զրկել տնտեսական ինքնուրույնությունից և նրանց դարձնել իր հումքի ու ապրանքների վաճառահանման շուկաները: Անգլիական կապիտալը դոմինիոններում փակել է նրանց տնտեսության բոլոր հենակետերը: Նա իրեն է ամրացրել հաղորդակցության ճանապարհները, մոնոպոլիա յե սահմանել հումքի վրա, իրեն է յենթարկել մշակող արդյունաբերությունը: Իր տարեկան կապիտալ ներդրումների 60%-ն Անգլիան տեղադրում է իր կայսերական տիրակա-



լություններում: Այդ քանակությունից, գերմանական «Ֆելքիշեր Բեոբախտեր» թերթի տվյալների համաձայն, 500 միլիոն ֆունտ ստերլինգ ընկնում է Ավստրալիային, 443 միլիոն ֆունտ՝ Կանադային և Նյուֆաունդլենդին, 248 միլիոն ֆունտ՝ Հարավային Աֆրիկային և Ռոդեզիային, 146 միլիոն ֆունտ Նոր Զելանդիային:

Սակայն աստիճանաբար, կապիտալիզմի արմատավորման և աճման հետ միասին, դոմինիոններում աճեց բավականաչափ նշանակալի սեփական արդյունաբերություն, վորը սկսեց մրցել Անգլիայի արդյունաբերության հետ: Ոտարերկրյա, վոչ-անգլիական կապիտալը դոմինիոնները թափանցելու և նրա ազդեցությունն ուժեղանալու հետեվանքով (ինչպես, որինակ, ամերիկյան կապիտալի ազդեցությունը Կանադայում) այդ մրցումն ել՝ ավելի մեծացավ: Տեղական բուրժուազիան պահանջեց ինքնուրույնություն և ավելի լայն իրավունքներ: Այդտեղ ել յերևացին առաջին ճեղքվածքները Բրիտանական կայսրության թաղի վրա:

Առաջին մեծ ճեղքվածքներ բերեց 1914—1918 թվականների համաշխարհային իմպե-

րիալիստական պատերազմը, վորի ընթացքում այնպիսի դոմինիոններ, ինչպես Կանադան, Ավստրալիան, Հարավային Աֆրիկան, ուժեղ չափով աճեցրին և առաջադրեցին մետրոպոլիայի նկատմամբ ավելի մեծ անկախության իրենց իրավունքները:

Անգլիան ստիպված յեղավ զիջումներ կատարելու: 1926 թվին, մետրոպոլիայի և դոմինիոնների ներկայացուցիչների մասնակցությամբ գումարված կայսրական կոնֆերենցիայում, ընդունվեց Վեստմինիստրրյան ստատուտը (այսպես կոչված Բրիտանական կայսրության սահմանադրությունը, վորն օրենքի ուժ ստացավ 1931 թվին), վորը դոմինիոններին ձևական, զուտ առերևույթ ինքնուրույնություն ընձեռեց: 1932 թվին, Ոտտավայի կայսրական կոնֆերենցիայում, դոմինիոններն Անգլիայից կարողացան ստանալ Գերադաս տարիֆ—արտոնություններ իրենց ապրանքներն անգլիական շուկան արտահանելու համար: Միջազգային հարաբերությունների բնագավառում դոմինիոններն իրավունք ձեռք բերեցին հրաժարվելու պայմանագրերին, մասնավորապես անգլիական կառավարության կնքած առևտրական պայ-



մանագրերին միանալուց, իրավունք՝ ինքնուրույն դիվանագիտական ներկայացուցչություն ունենալու մի շարք յերկրներում և իրավունք՝ ինքնուրույն կերպով պայմանագրեր կնքելու այն դեպքում, յերբ շոշափվում են տվյալ դոմինիոնի շահերը:

1914—1918 թվականների պատերազմում դոմինիոններն Անգլիային տրամադրեցին 1369 հազար զինվոր, վորից 619 հազարը մոբիլիզացիայի յեն յենթարկել Կանադան: Պատերազմական կարիքների համար Անգլիան իր դոմինիոններից դուրս քաշեց 780 միլիոն ֆունտ ստերլինգ. այդ գումարից 300 միլիոն ֆունտ վերցվեց Կանադայից, 376 միլիոն՝ Ավստրալիայից: Դրանից բացի, դոմինիոնները բավարարեցին պղնձի, ալյումինի, արճճի, բրդի անգլիական պահանջմունքը:

Ներկայումս Անգլիան ստիպել է իր մի քանի դոմինիոններին, չնայած նրանց դիմադրությանը, այս կամ այն կերպ մասնակցություն ունենալ պատերազմին:

Իռլանդիան վճռականապես պաշտպանում է իր չեզոքությունը: Հարավ-Աֆրիկյան միությունը ստիպված յեղավ յենթարկվել Անգլիայի պահանջներին այն բանից հետո,

յերբ նա սպառնաց ուժով փշրել նրա դիմադրությունը: Սակայն նա հրաժարվեց զորք դնելու Անգլիայի տրամադրության տակ: Նրա պատերազմական պատրաստությունները սահմանափակվեցին պաշտպանական ներքին միջոցառումներով:

Կանադան տրամադրել է յերկու դիվիզիա: Նա հանդիսանում է անգլիական ոդանավատորմի ստեղծման կենտրոնը: Սակայն, ինչպես գրում է «Ֆելքիշեր Բեոբախտեր» թերթը, անգամ անգլիացիները ստիպված են խոստովանելու, վոր Կանադայում ևս ուժեղ են հակապատերազմական տրամադրությունները, հատկապես Կվեբեկ նահանգում, ուր գերակշռում է ֆրանսիական ազգաբնակչությունը: Ավստրալիան ստիպված յեղավ տրամադրել 40 հազար զինվոր պատերազմի սկզբին և 40 հազար ել նոյեմբեր ամսին. Նրանից պահանջեցին ուղարկել 6 ոդային եսկադրիլիա, զենք և ռազմամթերք: Նոր Զելանդիան Անգլիային տրամադրեց մի կամավորական դիվիզիա: Նրա կառավարությունը մի շարք արտակարգ դեկրետներ հրատարակեց և իր տնտեսությունը փո-



խադրեց ռազմական եկոնոմիկայի ռելսերի վրա:

Նախատեսելով դոմինիոններին պատերազմի մեջ քաշելու բոլոր դժվարությունները, անգլիական «Սպեկտեյտոր» ժուռնալը դեռևս 1939 թվի հունվարին գրում էր. «Կարելի յե չկասկածել, վոր դոմինիոնների կառավարություններից վոչ մեկը ցանկություն չունի ներգրավվելու Յեվրոպայում հասունացող պատերազմի մեջ... Չեմբեռլենի կառավարության և զանազան դոմինիոնների կառավարությունների հայացքների միջև չկա իսկական ներդաշնակություն»:

## ՊԱՆԱՄԱՅԻ ՋՐԱՆՑՔ

Այս ջրանցքն իրար է միացնում Ատլանտյան և Խաղաղ ովկիանոսները: Ջրանցքը փորված է ամերիկյան մայր ցամաքի ամենանեղ տեղում— Պանամայի պարանոցում, վորը Հարավային Ամերիկան միացնում է Կենտրոնական Ամերիկայի հետ: Ջրանցքի յերկարությունը 81,3 կիլոմետր է, առավելագույն լայնությունը՝ )1,4 մետր, խորությունը՝ 12,5 մետր: Այսպես կոչված Պանամայի ջրանցքի զոնան, վոր

ԱՄՆ-ը գնեց 1904 թվին Պանամա հանրապետությունից, ունի 1365 քառակուսի կիլոմետր տարածություն՝ 30 հազար բնակչությամբ: Ատլանտյան ափում (Կարայիբի ծովի վրա) գտնվում են Կոլոն և Կրիստոբալ նավահանգիստները, Խաղաղ օվկիանոսյան ափում՝ Պանաման և Բալբոան:

Ջրանցքի շինարարությունը Միացյալ Նահանգները սկսեցին 1904 թվին: Ջրանցքում նավագնացությունը բացվեց 1914 թվի օգոստոսի 15-ին, շինարարությունը վերջնականապես ավարտվեց 1931 թվին: 25 տարում ջրանցքով անց են կացել 105122 նավեր 500·324·200 տոննա բեռով (1915 թվին 1075 նավ փոխադրել են մոտ 5 միլիոն տոննա, 1938 թվին 5500 նավ փոխադրել են 27,5 միլիոն տոննա):

ԱՄՆ-ի համար Պանամայի ջրանցքն ունի ռազմա-ստրատեգիական և տնտեսական խոշորագույն նշանակություն, քանի որ կրճատում է ծովային ուղին ատլանտյան և խաղաղ օվկիանյան նավահանգիստների միջև: Օրինակ՝ Նյու-Յորքից Կալիֆորնիա ընկնող ճանապարհը ջրանցքի շնորհիվ կրճատվում է 7873 մղոնով: ԱՄՆ-ի ռազմա-ծովային նավատորմի ուժերը կարող



են հարկ յեղած դեպքում հեշտությամբ փոխադրվել մեկ օվկիանոսից մյուսը ամենակարճ ճանապարհով: ԱՄՆ-ի ամբողջ նավատորմը կարող է ջրանցքով անցկենալ յերկու օրվա ընթացքում:

Այն տարիներին, յերբ շինվում եր ջրանցքը, կարծում եյին, թե չկա այնպիսի խոշոր նավ, որ չկարողանա անցկենալ նրա շլյուզների միջով: Հիմա այդպիսի նավեր կան: Պանամայի ջրանցքը չի կարող անցկացնել «Նորմանդիա» և «Կուին Մերի» օվկիանոսյան հսկա շոգենավերը: Այդ պատճառով 1939 թվի ամռանը ամերիկյան կոնգրեսը վորոշեց 277 միլիոն դոլլար հատկացնել ջրանցքում լրացուցիչ շլյուզներ կառուցելու համար:

Յեվրոպայում ծագած պատերազմի հետևանքով ԱՄՆ-ն ուժեղացնում է Պանամայի ջրանցքի պաշտպանությունը: Դեռ նախքան պատերազմական գործողությունների սկսվելը, կառավարությունը, ինչպես հաղորդեց «Նյու-Յորք Թայմս» թերթը, 60 միլիոն դոլլար բաց թողեց ջրանցքի ամրությունների սիստեմը բարելավելու համար: Ջրանցքը և նրան կից գտնվող պահպանվող կայազորը վորոշվեց կրկնա-

պատկել, հասցնել 25 հազար զինվորի։ Ծրագրվեց նաև նոր աերոդրոմ կառուցել․ ջրանցքում ինքնաթիռների թիվը վորոշվեց 100-ից հասցնել 375-ի։ 1940 թվի սկզբին պրեզիդենտ Ռուզվելտը կոնգրեսին խընդրեց միջոցներ հատկացնել Պանամայի ջրանցքում լրացուցիչ ոդային բազաներ, վորանոցներ, նոր շլյուզներ կառուցելու և ջրանցքի պաշտպանության վերաբերյալ այլ միջոցառումների համար։

ԱՄՆ-ի մի քանի իմպերիալիստական շրջանները գտնում են, վոր Պանամայի ջրանցքի պաշտպանության համար բավական չեն նրա ափերին հաստատված զենիթային թնդանոթները և այն պահպանող ցամաքային զորքերն ու ինքնաթիռները․ անհրաժեշտ է նաև Կարայիբի ծովը դարձնել «ամերիկյան ներքին լիճ»։ Դրա համար ԱՄՆ-ը, այդ շրջանների պնդումով, պետք է ձեռք բերի Պանամայի ջրանցքի մոտ գտնվող կղզիները, վորոնք պատկանում են Անգլիային, Ֆրանսիային, Հոլանդիային և լատինո-ամերիկյան յերկրներին։





Պատ. խմբագիր՝ Ս. ՂԵՎՈՆԴՅԱՆ

Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր Չ— 1067

Պատվեր՝ 162, տիրաժ 6267

Հանձնված է արտադրության 16/II 1940 թ.

Ստորագրված է տպագրության 29/II 1940թ.

Հայկական ՍՍՀ Ժողկոմխորհին կից Գլխ. Հ.Յ
Հրատարակչության տպարան, Յերևան